ՁԱՏԿԻ ԱՐՁԱԿՈՒՐԴԻՆ ԱՌԹԻՒ Յառաջ լոյս չի տեսներ երեքշաբթի օր :

ԵՄԷՆԻ Թագաւորին եղբայրը, որ դաւ մը սարքած էր անցեալ շաբթու, շղթայի զարնուեցաւ բանտին մէջ :

ԵՐՈՒՍԱՂԷՄԸ Յորդանանի եւ Իսրա-յէլի միջեւ բաժնելու ծրագրին դէմ ար-տայայտուեցաւ Ռոպէր Շուման, գաղա-ղիական նախարարը, որ ուխտի գացած է Ս. քաղաքը :

ԱՐՏԱՔԻՆ ՆԱԽԱՐԱՐԸ, Պ. Փինէ, տեսակցութեան մը առթիւ յայտարարեց թէ իր հիմնական նպատակն է բանակցու-թիւն Արեւելքի հետ : Յետոյ ըսաւ թէ Ապրիլի վերջը տեսակցութիւն մը պիտի ունենայ արեւմտեան Գերմանիոյ վարչա-պետին հետ :

ՃԱՓՈՆ կ'ուզէ սերտ յարաբերութիւն-ներ մշակել Միջին Արեւելքի պետութիւն-ներուն հետ : Այս ուղղութեամբ հրաւէր ղրկած է Պարսկաստանի, Լիբիոյ, Սու-րիոյ, Իրաքի, Եմէնի, Յորդանանի, Լիբանանի, Եգիպտոսի եւ Արաբիոյ :

ՁԻՆԱՍՏԱՆԻ ԵՒ ԳԵՐՄԱՆԻՈՅ միջեւ պատերազմական վիճակը, որ կը տեւէր 1941 Սեպտեմբերէն ի վեր, վերջ գտաւ մասնաւոր օրէնքով մը : Այս առթիւ հրա-տարակուած չինական զեկոյցը կ'ըսէ թէ արեւմտեան պետութիւնները կ'ուզեն Գերմանիան երկու մասի բաժնուած պա-հել, եւ ուրեմն անկարելի է մտածել հաշ-տութեան դաշնագրի մը մասին :

Խ. ՄԻՈՒԹԵԱՆ Կեդր. Կոմիտէին ընդհ. քարտուղարը, Խրուշչեւ, զեկուցում տա-լով երկրագործական համագումարին մէջ, անգամ մը եւս շեշտեց ծանր ճար-տարարուեստին վճռական դերը խորհր-դային տնտեսութեան մէջ : «Ահա թէ ին-չու զարկ պիտի տանք նախ երկաթի ճարտարարուեստին, հանքածուխին, ելեկտրականութեան» :

ԻՐԱՆԻ հրաժարեալ վարչապետը, Զօր. Զահետի, ստիպուեցաւ Պէյրութ մնալ, ընդհատելով իր Գերմանիա ճամբորդու-թիւնը, հիւանդութեան պատճառաւ : Այ-ցելուներ չեն կրնար մտնել իր սենեակը, իսկ զօրավարը մերժած է որեւէ յայտա-րարութիւն ընել :

✕Նոր վարչապետը, Հուսէյն Ալա, յայ-տարարեց թէ Շահն Շահին համար նախ-կին վարչապետը այլեւս «օրուան մար-դը» չէր, թէեւ վերջապետը չի թերագնա-հատեր անոր մատուցած ծառայութիւն-ները : «Այս պատճառով ինծի յանձնեց վարչապետութեան պաշտօնը որպէսզի սաստկացնեմ պայքարը կաշառակերու-թեան եւ հակապետական տարրերուն դէմ, միշտ պահելով երկրին ընդհ. քա-ղաքականութեան ուղեգիծը» : Կը նշա-նակէ թէ Զօր. Զահետի հրաժարած է ա-կամայ :

ՕԴԱՆԱՒԷՆ վար ինկաւ հիւրընկալ օր-իորդ մը, Պէյրութի մէջ, ծանրապէս վի-րաւորուելով :

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Յառաջիկայ հաւաքոյթը այս չորեք-շաբթի գիշեր Քաւէ սրճարանի վերնա-յարկը : Կը խօսի Տիկ. ԷԼԻԶ ԱՅՎԱԶԵԱՆ, նախկին տնօրէն Պոլսոյ Կեդր. վարժա-րանի : Նիւթը Ծնողներու դերը մանուկ-ներու անմամ շրջանին :

Կը հրաւիրուին մասնաւորաբար ծնող-ները : Մուտքը ազատ է :

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Նիմէն Արտաշէս Քէքլիկեան, որ հի-ւանդանոց փոխադրուած է ծանր վիճակի մէջ, կը փնտռէ իր մօտիկ ազգականը՝ Մելքոն Քէքլիկեան (Ալիմանթաւսին ժէ-նէրալ, Փարիզ, ուրիշ հասցէ չի գիտեր) :

Հասցէն.— 5պիս, Ռիւ Վիէօ, Նիմ, (Կար) :



## ԱՊՐԻԼ 11 — 24-Ի
## ՔԱՌԱՍՆԱՄԵԱԿԸ

ՎԻԷՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հայ Կամ. եւ Մարտ. Միութեան եւ մասնակցութեամբ Հ. Յ. Դաշնակցութեան, Վասպուրակա-նի, Տարօն Տուրուբերանի, Ֆ. Կ. Խաչի, Նոր Սեբաստիոյ եւ Վիէնի երգչախումբի, ղեկավարութեամբ Յովսէփ վրդ. Լեւոն-եանի :

Կիրակի, 17 Ապրիլ, կէսօրէն վերջ ժամը 4ին Սէրքըր Կաթոլիկի սրահին մէջ : Կը խօսի Հ. ԿԱՐԱՊԵՏ Ծ. Վ. ԱՄԱՏՈՒՆԻ եւ Պ. Ն. ՄՌՄՃԵԱՆ (Լիոնէն) :

Կիրակի առաւօտ հանդիսաւոր ձայնա-ւոր պատարագ, Սէն Մորիս մայր եկեղե-ցին : Պիտի պատարագէ Փարիզէն Հայր Կարապետ Ծ. Վ. Ամատունի :

ԼԱ ՍԻՈԹԱՅԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հայ Երիտ. Երկ-սեռ Միութեան :

Շաբաթ, 16 Ապրիլ, կէսօրէ վերջ ժամը 3ին, Սինեմա «Բիւրսալ»ի մէջ :

Պատուակալ նախագահութեամբ Պ. ՏԻ-ՐԱՆ ԹԷՔԷԵԱՆԻ (Մարսէյլէն) :

Պիտի բանախօսէ Փրոֆ. Գ. Գ. ԽԱ-ՑԻԿԵԱՆ (Մարսէյլէն) :

Խօսք կ'առնեն նաեւ՝ Պ. ԽԱՉԱՏՈՒՐ ԳՈՒԼՈՒՆՃՈՅԵԱՆ եւ Պ. ՅԱԿՈԲ ԱՃԷՄ-ԵԱՆ :

## ՖՐԱՆՍԱՀԱՅ Կ. ԽԱՉԻ
## ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Այս Շաբաթ գիշեր, ժամը 9էն մինչեւ առաւօտ, Պէռիէ Միլէի սրահներուն մէջ :

Գեղարուեստական բաժին.— Կ'երգէ Օր. Նուարդ (Ժօլին) Տիրատուրեան (Փարիզէն), Կ'արտասանէ Օր. Անժէլ Ու-զունեան (Վիէնէն), Կովկասեան եւ հայ-կական պարեր Պ. Վազգէն Յովսէփեան :

Նուագ Թրիօ Մէտինա, Արմօնիքա Լէօն Մինֆովաքի, (Վիլէօրպանէն), արդիական պարեր Պէռիէ Միլէի նուագախումբին :

Հաճելի անակնկալներ, եւ ճոխ պիւֆէ ժողովրդական գիներով :

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Մայիս 1ին, կիրակի ժամը 4–7, Բա-րեգործականի 49րդ տարեդարձի հանդէսը Օթէլ Լիւթէսիայի մէջ :



### ԽՆՋՈՅՔ ՁԱՏԿԻ ԱՌԹԻՒ

Կազմակերպուած Սեբաստիոյ Դաւրա գիւղի Հայր. Միութեան կողմէ, Ապրիլ 17ին կիրակի կէսօրէ ետք ժամը 3ին, Թրիմեան դպրոցին մէջ, 1 Ռիւ տը լա Տէ-փանս, Իսի լէ Մուլինօ : Ընտանեկան ջերմ մթնոլորտ, մանաւանդ հաւկթախաղ : Ա-րեւելեան եւ եւրոպական նուագ, Շմաւոն Պալեանի կողմէ : Մուտքը ազատ է :

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## ԲԱԲԵՐԴ ԵՒ ԻՐ ՇՐՋԱՆԸ

Գրեց՝ Մաղաքիա Ասլանեան (ԲԱԲԳԷՆ ՔԱՀԱՆԱՅ)

Կը պարունակէ տեղագրական եւ ազ-գագրական մանրամասնութիւններ, Հա-յաշէնք սարսափները, բուռ մը քաջերու արշաւը դէպի Կովկաս եւ ուրիշ անտիպ տեղեկութիւններ : (308 էջ) :

Գիրքը զարդարուած է շատ մը հազ-ուագիւտ պատկերներով :

Գին 500 փրանք

Դիմել Եփրեմ Թեւանեանի, կամ Վահ-րիճ Եսայեանի,

38 - 40, Rue de la Montagne Ste. Geneviève, Paris (5)

Իսկ Մարսէյլի մէջ.—
Խորէն Նազարէթեանի
7, Bld. Mouren la Cabucelle

*Imp. ARAXES, 46, rue Richer. PARIS 9e*

## ԾԻԾԱՂԻ ԵՐԵԿՈՅ

Սալ Իէնա, 10 Ավընիւ Իէնա
Ապրիլ 16, Շաբաթ ժամը 20.45ին
Դերասան Գ. ՏԷՐՎԻՇԵԱՆ
կը ներկայացնէ .

## ԶԱՐՇԸԼԸ ԱՐԹԻՆ ԱՂԱ

Բեմադրութեամբ ՏՐԴԱՏ ՆՇԱՆԵԱՆԻ :
Մասնակցութեամբ՝
Տէր եւ Տիկին Տ. Նշանեանի, Գրիգոր-վահանի, Ն. Պշտիկեան եւ՝
Ա. ԳՄԲԷԹԵԱՆԻ

Ինչպէս նաեւ ուրիշ դերասաններու :
Տոմսերու համար դիմել Հ. Բալուեան գրատուն, 43 ռիւ Ռիշէ :

## Կ'ՈՒԶՈՒԻ

Անթարփիրնէօզ, գործաւորներ, տան մէջ աշխատելու, ամառուան հագուստի համար : Կարուած մեծ քանակութեամբ գործ : Ներկայանալ ամբողջովին կար-ուած հագուստով :

Ներկայանալ

ANDRÉ, 9, Rue d'Alexandrie, Paris (2)

Չներկայանալ եթէ գործին լաւ վարժ չէք :

✕

Երիտասարդ մը խանութի գործերու համար : Դիմել՝

PARIS - CALIFORNIE
58, Rue de Cléry

